# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ՔԱՌԱՍՆՈՒԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

**1928**

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ՏԻԱՐ ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆԻ ՆՊԱՍՏՈՎ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ



# HANDES AMSORYA

## Zeitschrift für armenische Philologie

Zweiundvierzigster Jahrgang

**1928**

Herausgegeben mit Unterstützung des Herrn Galust Gülbenkian

Wien

Mechitharisten-Buchdruckerei

*տամ ձեւով, որից տամ–ուկ, որ նշանակում է թաց եւ տամկութիւն — թացութիւն: Տամուկ բառի կազմութեան համար համեմատիր քնուկ, քրտնուկ, որ հանդիպում ենք ժողովրդական երգի մէջ.

Դեռ քնուկ էր, քրտնուկ էր իմ եարը.

որ այդ բառերը նշանակում էր դեռ քնած էր, քրտնած էր իմ եարը: Ուրեմն տամուկ — նշանակում է թաց եղած, թրջուած:

Թամ արմատի * թամ–ան ձեւի պէս տամ արմատն եւս պէտք է որ ունեցած լինի *տաման մի ձեւ, որ պիտի նշանակէր տամ անող, այսինքն թրջող, թաց անող: Իսկ այդ *տաման ձեւը վերի կարգով պիտի դառնար *տաւան, որից վերջին ձայնաւորի սղումով — *տաւրն, իսկ սրանից — տաւն, որ է տօն:

Այսպիսով մեր տօն բառի նախաւոր իմաստն էր տամ անող, կամ որ նոյն է՝ թամ անող, այսինքն անձրեւ, թօն:

Տօն բառի այս հին իմաստը տարօրինակ չի թուայ եթէ նկատենք, որ լեզուն շատ հին երեւոյթ է, ամէնից յետամնաց վայրենի ցեղերն անգամ այսօր խօսել գիտեն: Քաղաքակրթութեան երեք հին շրջաններում — որսորդական, հովուական եւ երկրագործական — անձրեւը միշտ խանգարած է մարդկանց աշխատանքը, բռնադատած է իր որջի, հիւղի կամ խրճիթի մէջ անգործ ու պարապ նստել: Այրաբնակ որսորդի աշխատանքը անձրեւին պէտք է ընդհատուէր, որովհետեւ թօն էր, տօն էր, այսինքն թամ անող կամ տամ անող էր գալիս վերից: Մեր տօն բառի լատիներէն համարժէքը fēriae ընդհանրապէս նշանակում է աշխատանքի ընդհատում, հանգիստ, պարապ: Երբ անձրեւ էր գալիս հին մարդը հարկադրաբար մնում էր անգործ, պարապ: Երբ կեանքի զարգացման հետեւանքով կամովին սահմանուեցան անգործութեան, աշխատանքի ընդհատման, պարապութեան օրեր, այսինքն տօներ — այս նոր երեւոյթը որակուեցաւ հին բառով, որ է տօն: Թէ ինչո՞ւ տօն եւ ոչ թօն սա մի խնդիր է, որ դժուար է լուծել. որովհետեւ դեռ հաստատապէս լուծուած չէ թէ արդեօք թ ձայնի մերկացո՞ւմն է տն թէ տ ձայնի թաւացումն է թն: Այսինքն թօն բա՞ռն է հնագոյն կերպարանքը տօն բառի թէ տօն բառը՝ թօն բառի: Այս կարգի բառերի ցեղակցութիւնը հաստատել — արդէն նշանակում է ստուգաբանել: Մնացածը մի խնդիր է, որ ընդհանուր լեզուագիտութեան կը վերաբերի:

Այսպիսով ինչպէս տեսանք տօն եւ թօն նոյն բառի տարբեր ձեւերն են եւ երկուսն էլ նշանակում են անձրեւ: Նրանք, որ համեմատական բառգրքեր ունին՝ կարող են որոնումներ կատարել այս ուղղութեամբ եւ տեսնել թէ արդեօք տօն նշանակող օտար բառերը որեւէ կապ ունի՞ն անձրեւի հետ: Ես հնարաւորութիւն չունիմ այդ աշխատանքը կատարելու:

Ն. ԱՂԲԱԼԵԱՆ

# ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ

## ԴԱՐՁԵԱԼ ԿՈՐԻՒՆԻ ՇՈՒՐՋԸ

«Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, 1927, Թիւ 9, պ. Ֆնտգլեան հաճել է պատասխան գրել մեր դիտողութիւնների առթիւ, տպուած նոյն հանդէսում:

Պ. Ֆնտգլեան մի գիւտ է արել, Կորիւնի մի հատուածի մի նոր մեկնութիւն: Որպէս ապացոյց, որ ինքը ճիշտ է հասկանում յիշեալ հատուածը, կոչ էր արել Փոքր–Կորիւնի եւ Ագաթանգեղին, որ սրանք եւս իրեն իբրեւ թէ համամիտ են: Ահա՛ իր յայտարարութիւնը, «Փոքր–Կորիւն եւ Ագաթանգեղ յանկարծահասով մահ չեն հասկանար»:

Արդ մենք ցոյց տուինք, որ այս կոչումը յանիրաւի է, ոչ Փոքր–Կորիւն եւ ոչ Ագաթանգեղ պ. Ֆնտգլեանի գործին վկաներ չեն: Կարծեմ, պարզ է խնդիրը:

Բայց տեսէ՛ք, ինչպէս է թիւրում հարցը պ. Ֆնտգլեան ասելով, որ մենք զբաղւում ենք Կեղծ–Կորիւնով, փոխանակ հարազատի, «իրր ուղիղը գերադասելով», այլ եւ ուզում ենք որպէս թէ «Կեղծ–Կորիւնով ուղղել հարազատը»: Մօքի այս խօսքերում ներելի չէ բնաւին մինչեւ անգամ պ. Ֆնտգլեանի նման բանասէրին: Հակառակորդին հասկանալը եւ իր ասածը յիշելը առաջին եւ տարրական պահանջն է ամէն մի վէճի, առանց որի վէճն իսկ դառնում է ժամավաճառութիւն: Սրանով պ. Ֆնտգլեան կրկնակի մեղանչում է, գրպարտելով նախ Կեղծ–Կո–

*րինին եւ Ագաթանգեղին եւ յետոյ մեզ: Խնդիրը բնաւ այն չէ, թէ ինչպէս է վերաբերւում Փոքր-Կորիւնը հարազատին: Աւելին կ'ասենք նրա վերաբերումը մեզ համար բոլորովին պարտադիր չէ: Հարցն այն մասին է, թէ Կեղծ-Կորիւնը իրաւ կողմնակի՞ց է պ. Ֆնտգլեանի ըմբռնումին, ինչպէս վերջինս հաւաստացնում է, թէ սա սխալւում է իր կոչումով: Ցոյց տուինք, որ սխալւում է: Ուրիշ ոչինչ: Նկատել էինք, որ Փոքր-Կորիւնի մէջ կան խօսքեր, որ գուցէ սպրդել են պ. Ֆնտգլեանի ուշադրութիւնից, խօսքեր, որ վկայում են, որ «յանկարծահաս»ով Վահանի մահն է հասկանում: Պ. Ֆնտգլեան առարկում է, որ այս խօսքերը Փոքր-Կորիւնի «ընդմիջարկութիւն» են, մոռանալով, որ կարեւորն հէնց այդ է, որ պարզում է մեզ Փոքր-Կորիւնի ըմբռնումը: Այդ ըմբռնումը ընդդէմ է պ. Ֆնտգլեանին եւ ուրեմն, անարգար գործ է կատարում պ. Ֆնտգլեան, երբ յայտարարում է որ Կեղծ-Կորիւնը նման է մտածում: Մենք չենք, որ դիմում ենք Փոքր-Կորիւնին մեր ասածը հաստատելու համար, այլ ինքը պ. Ֆնտգլեան եւ մենք Փոքր-Կորիւնը քննելով, չենք ուզում հարազատ Կորիւնը ուղղել, այլ ուղղել պ. Ֆնտգլեանի սխալ կոչումը: Առանձին նորութիւն չէ հարկաւոր որ հասկացուի այս պարզ ճշմարտութիւնը:*

*Սակայն պ. Ֆնտգլեան թիւրելով հարցը, զարմանում է, որ մենք Վահանին սուրբ ենք համարում: Դարձեալ, նախ մենք չենք սուրբ համարողը, այլ Փոքր-Կորիւն: Եւ երկրորդ՝ ինչո՞ւ է պ. Ֆնտգլեան զարմանում. որովհետեւ, Վահան «աշխարհիկ հոգերով եւ կրքերով զբաղուած մարդ էր»: Հարազատ Կորիւնը համարում է Վահանին «այր պատուական եւ երկիւղած» եւ ուրեմն հնարաւոր էր, որ մահից յետոյ սրբանար, քանի որ այդ ուղին բաց է ամէն մի բարեպաշտ քրիստոնէի համար: Կեղծ-Կորիւնը, որքան եւ տգէտ եւ խեղճ պ. Ֆնտգլեանի աչքին, կարող է իր կողմէն հարցնել պ. Ֆնտգլեանին, ինչպէ՞ս է որ մեղաւորից Վահանը, «որմէ սրբութեան բոյր այնքան քիչ կը բուրէր» հանդիսանում է քրիստոնեայ աշխարհի հովանաւոր, Սահակ եւ Մաշթոց սուրբ հայրերին փոխարինող: Փոքր-Կորիւն իրաւամբ կարող է նախատել պ. Ֆնտգլեանին, որ իր աչքի գերանը ուզում է ուրիշի աչքը խոթել:*

*Նման սխալ էր գործել նոյն բանասէրը եւ Ագաթանգեղի նկատմամբ, սրան եւս սուտ վկայութեան կոչելով: Ագաթանգեղ յարմարեցրել է Վահանի հատուածը Տրդատին,* յանկարծահաս *բառը փոխարինելով* յանկարծակամով: *Գիտակցական փոփոխութիւն է, համաձայն իմաստին:*

*Պ. Ֆնտգլեան յայտարարում է որ այդպիսի բառ չկայ եւ որ դրչագրական սխալ է փոխան յանկարծահաս-ի: Անհիմն ենթադրութիւն: Նախ այդպիսի բառ կայ: Ագաթանգեղն իսկ ուրիշ տեղ գործ է ածում նոյն բառը՝ «ուրախութիւն եղեւ եւ լինի ընդ անկարծակամ դարձ կենացն» (ԾՁ., էջ 243): Երկրորդ՝ Ագաթանգեղի բազմաթիւ ձեռագիրներից եւ ոչ մինը հիմք չեն տալիս այդպիսի սրբագրութեան: Էջմիածնի գիտական հրատարակութիւնը պահել է յանկարծակամ ընթերցուածը եւ իրաւամբ: Խուսափելու է ինքնակոչ ուղղումներից: Սրբագրութիւնն եւս իր հիմքերն ունի եւ բաւական չէ մատը ճակատին դնել եւ կամայականութեան դաշտ բաց անել: Անցնենք այժմ հարազատ Կորիւնին:*

* * *

*Ասել էինք որ պ. Ֆնտգլեանի մեկնութիւնը Վահանի հատուածի անտես է անում ինչ ինչ քերականական անհարթութիւններ: Պ. Ֆնտգլեան մեզ պատասխանում է, որ մեր նկատողութիւնները այլ բան չեն եթէ ոչ «թիւր հայերէնագիտութեան փունջ»: Եւ այս քաջ հայագէտը փորձում է ցրել մեր սխալները, կարելի է ասել, թերավարժ մարդկի կայտառութեամբ:*

*Նախ՝ նկատել էինք, որ պ. Ֆնտգլեանի մեկնութեամբ «բարեացապարտին Վահանայ» սեռական հոլովը դառնում է անուան բայի, որ քերականական անհեթեթութիւն է:*

*Տեսէ՛ք, ինչ է պատասխանում պ. Ֆնտգլեան. «մեր միտքը չէ եղած բնաւ աւելորդ պատախօսութիւն ընել՝ գիտնականներու ընթերցման ենթարկուած յօդուածի մէջ մատնանիշ ընել օրինակներ նոյն ինքն Կորիւնէն եւ ցոյց տալ թէ սովոր է* «այլ, իսկ» շաղկապներէ անմիջապէս ետքը սեռական հոլովով դնել անունը»:

*Բայց տեսնելով, որ անգէտի հետ գործ ունի, «հարկադրուած է մէջ բերել իբր ապացոյց սա օրինակները. «իսկ Պաւղոս[ի] (իր ուղղումն է) ի մտի եղեալ էր», եւ «այլ*

սրբոյն Պաւղոսի չորեքտասանեքումբք թղթովք պատմէ»:

Որքան եւ մեղմ լինել կամենանք, բայց ստիպուած ենք ասել, որ քննադատական խակութիւն է կարծել, որ որեւէ շաղկապ կարող է անուն բային փոխել սեռական հոլովի: Կարելի էր լռութեամբ անցնել այս պարագան, որպէս մի անզգոյշ սայթաքում, մի տեսակ lapsus amatoris:

Բայց ստիպուած ենք յիշեցնել, որ նոյն մատնանշուած սեռական հոլովները բնաւ կապ չունեն նախընթաց շաղկապի հետ, այլ կախուած են անցեալ դերբայից համաձայն սոյն քերականական երեւոյթի, որ յայտնի պիտի լինի նաեւ պ. Ֆնտգլեանին: Երբ ստորոգեալը արտայայտուում է անցեալ դերբայով կամ աներեւոյթ եղանակով՝ ենթական կարող է դրուել սեռական հոլովով, կամ պահել ուղղականը: Կորիւն հաւատարիմ է այս կանոնին: Այսպէս Կորիւն գրում է. «վասն որոյ երանելոյն հայեցեալ . . . , դառնայ»: «Զայս ուսեալ ընկալեալ ի տեառնէ երանելի առաքելոցն . . . իսկ Հաբելին զայն լուեալ, փութանակի հասանէր»: «Իսկ աշակերտաց վարդապետին դառնալոյ ընդ իւր յերկուս բաժանեալ . . . կարգէր» եւ այլն, որոնց ամէն մի էջում պատահում են նման դարձուածներ: Միեւնոյն ժամանակ պահում է երբեմն ուղղական ձեւը՝ «իսկ ցանկալի տեառն եղբայրն Յակոբոս զհամարեղէն իսկ զգունոյն սրբոց հանգերձ որբասէր տերամբն յօրինակ առեալ ի թղթի իւրում ասէ». եւ այլն:

Պ. Ֆնտգլեան բերում է երկու օրինակ, մէկը նախապէս սրբագրելով առանց որեւէ անհրաժեշտութեան: Տպագիրն ունի՝ «իսկ Պաւղոս ի մահ եղեալ էր», Ֆնտգլեան ուղղում է «Պաւղոսի»: Մէկը թէ միւսը «իսկ»ի հետ կապ չունին եւ կախուած են «եղեալ էր» բայից:

Երկրորդ օրինակն է՝ «Այլ սրբոյն Պաւղոսի չորեքտասանեքումբք թղթովք պատմէ զիւր առաքելակիցս եւ նեղակակիցս եւ ուրախակիցս իւր ասէ»: Պ. Ֆնտգլեան, որ սրբագրութեան առանձին տենչ ունի, յայտնում է նկատել, որ այս նախադասութեան մէջ երկու դիմորոշ բայերից մէկը պէտք է անցեալ դերբայ լինի, համաձայն լեզուի կանոնաւորութեան եւ Կորիւնի սովորութեան: Այսինքն պատմէ պիտի ընթերցուած է, փոխանակ պատմեալ (երեւի պատմել գրութիւնից սխալ արտագրուած): «Այլ Պաւղոսի պատմեալ . . . ասէ», կանոնաւոր ձեւ է, որ պատահում է Կորիւնի գրեթէ իւրաքանչիւր էջում: Ուրեմն, ի՞նչ մնաց պ. Ֆնտգլեանի «դատախօսութիւնից», որ առաջին անգամ զլացել էր անել եւ միայն յետոյ հարկադրուած անում է:

«Բարեացապարտ» բառն եւս մի առիթ է պ. Ֆնտգլեանի համար փայլելու իւրովի յատկութեամբ:

Դուրս է գալիս, որ այս բառը «անտրամաբանական» կիրառուած է, որ ունի իր «գաղտնիքը» եւ արգոյ բանասէրը փորձում է լուծել առեղծուածը, կուժ ու կուլան կոտրելով այս անգամ եւս Կորիւնի գլխին:

Պ. Ֆնտգլեան գիտէ, որ Մակաբայեցւոց գրքի թարգմանիչը Կորիւնն է, գիտէ, որ այս գրքի թարգմանելիս Կորիւն կազմել է չարեացապարտ «վայելուչ» բառը, «զամենայն չարեացպարտ զՄենելաւոս արձակել ի պարտեաց»: Յետոյ երբ սկսել է Մաշթոցի կեանքը գրել, Կորիւն թխել է բարեացապարտ «անյաջող եւ անտրամաբանական» բառը, չարեացապարտ-ի կաղապարին վրայ ձեւելով: Ասել է թէ Կորիւն, որին քաջ հայկաբան է անուանում պ. Ֆնտգլեան, վսեմ ոճով, աւելի տկար էր հայերէնի մէջ, քան պ. Ֆնտգլեան:

Չէ, այս բոլորը սին ենթադրութիւններ են, անհիմն եւ անտեղի: Պ. Ֆնտգլեան, որ չի յապաղում սրբագրելու Պաւղոս՝ Պաւղոսի, անտեղի եւ սխալ, յայտնում է նկատել, որ չարեացապարտ բառն ինքն թիւր ընթերցուածի արդիւնք է: «Զամենայն չարեացպարտ զՄենելաւոս» ուղղելու է «զամենայն չարեաց պարտ զՄենելաւոս», «զամենայն չարեացպարտ» լեզուական անհեթեթութիւն է, որ չի արտայայտում այն ինչ որ ուզում է ասել: Անշուշտ, մի թիւրիմացութիւն կայ: Յոյն բնագիրը ունի՝ τῆς ὅλης κακίας αἴτιον, այսինքն «ամենայն չարեաց պարտ»: Ակներեւ է, որ չարեացպարտ թիւր ընթերցուած է, փոխան չարեաց պարտ ձեւի: Որ մեր ենթադրութիւնը ճշմարիտ է, հաստատում է նոյն Մակաբ. գիրքը, ուր հանդիպում ենք մի ուրիշ եւ սոյն արտայայտութեան՝ «եւ կամ զպարտ այլոց չարեաց ընկենուլ» (գլ. 13, 6): Միւս կողմից Եզնիկն ասում է՝ «որ թարգմանեցոյց

պչարն է պարտ չարեաց»։ Այս դասական վկայութիւնը միանգամայն վաւերացնում է մեր ուղղումը։

Սրբագրական մեթոդի պահանջները, կարծում ենք, լիովին յարգուած են եւ իրաւունք ունենք ասելու, որ Ս. Գրքում չարեացապարտ բառը գոյութիւն չունի։ Հետեւապէս պ. Ֆնտգլեանի խորիմաստ պրպտումները պարապ զբօսանք են։ Կորիւն էլ անպարտ է այն «անտրամաբանական» կերտուածների համար, որ մնում է միայն պ. Ֆնտգլեանի սեփականութիւն։

Կորիւն ինքն է կազմել բարեացապարտ բառը առանց ուրիշի օգնութեան, մի բարդութիւն, որ յատուկ է Կորիւնեան լեզուական ճաշակին. ի՞նչ է նշանակում։

Պէտք չկայ ծանրանալու մահապարտ, մեղապարտ, վրիժապարտ եւ նման բառերի վերայ եւ կամ ցոյց տալու, որ սրանց նախադաղափարը իրանական tanu-pərəta, պահլ. tanapuhr, այլ եւ pərəto-tanu, կամ pešo-tanu, պարսկ. pašotan, որ նշանակում է անձնապարտ, ինքնապարտ, պէտք չկայ պարզելու այս բարդութեան սկզբնական իմաստը։ Մեր նպատակի համար բաւական է յիշել բարեացակամ, բարեացապաշտ բառերը, որոնց դասական ձեւն է բարեկամ, բարեպաշտ։ Վերջին բարեացապարտի աւելի ստոյգ ձեւն է, ուրեմն բարեպարտ։ Սրա իմաստը հասկանալու համար, մտաբերելու է՝ երախտապարտ, շնորհապարտ կազմութիւնները։ Երախտապարտը նա է որ պարտ է երախտիք, շնորհապարտը նա, որ պարտ է շնորհ։ Հետեւապէս եւ բարեացապարտը կամ բարեպարտը նա, որ պարտ է բարիք։ Երախտիք [illegible] այլ բան չէ քան բարիք — Ս. Գրքում երախտիք համապատասխանում է յուն. ἀγαθά «բարիք» բառի, որով բարեացապարտ համազօր է երախտապարտի կամ երախտապէտի։

Կորիւն այսպէս է անուանում Վահան Ամատունի իշխանին։ Արդեօք անպատեհութիւն կա՞յ։ Ամենեւին ոչ։ Վահանը Սահակի եւ Մաշթոցի մօտ ուսել էր գիր եւ գրութիւն, աշակերտել սուրբ հայրերին։ Մաշթոցի մահից յետոյ Վահանը հոգ է տանում վայելուչ յուղարկաւորութեամբ թաղելու նրա մարմինը Օշականում, երեք տարուց յետոյ կանգնում է խորան նրա նշխարների վերայ – այս արարողութիւն է երախտագիտական զգացումի հանդէպ իր եւ համայն աշխարհի գրական ծնողի։ Վահանը երախտապէտ անձն էր, եւ Կորիւն իրաւունք ունէր այդպէս անուանելու։

Պ. Ֆնտգլեան մեծ եռանդով ընդդիմանում է մեր մեկնութեան, ուղեցոյց ունենալով, երեւի, Հայկազնեան բառագիրքը։ Բառագիրքը ասում է, որ բարեացապարտը նա է, «որ ի ձեռն բարերարութեանց պարտական առնէ զբարերարեալն»։ Անհիմն բացատրութիւն։

Պ. Ֆնտգլեան զգալով այս բացատրութեան տկարութիւնը, աշխատել է այլ կերպ հիմնաւորել նոյն իմաստը, պատմելով այն հեքաթը, որ ձգտում էր, չարեացապարտի թիւրիմաց զուգակը համարել բարեացապարտը։

Պ. Ֆնտգլեան գտնում է, որ մեր մեկնութիւնը չի պաշտպանում այն գործածութեան, որ նկատւում է հեղինակների մօտ։ Այսպէս Ագաթանգեղ անուանում է Տրդատին բարեացապարտ։ Պ. Ֆնտգլեան հարցնում է, արդեօք Տրդա՞տն եւս երախտապարտ էր։ Անպայման երախտապարտ էր եւ աւելի քան Վահանը։ Տրդատը խոզ էր եւ մարդ դարձաւ, երբ «յանկարծակամ» քրիստոնէութիւն ընդգրկեց եւ այս բանի համար նա յաւէտ բարեացապարտ էր։

Հայկազնեան բառագրքից քաղում է պ. Ֆնտգլեան եւ Խորենացու, Յովհան Կաթողիկոսի եւ Թովմայ Արծրունու անուններ, որ նոյն բառը գործ են ածել իբրեւ թէ ուրիշ իմաստով, քան մեր մեկնութիւնը։ Այս նկատողութիւնը եւս ստոյգ չէ։

Կորիւնից յետոյ բարեացապարտ բառը կիրառում է Ղեւոնդ Երէց եւ յետոյ Խորենացի։ Թովմա Արծրունին արտագրում է Ղեւոնդից եւ Յովհան Կաթողիկոսը, հաւանօրէն, Խորենացուց, եթէ ոչ Կորիւնից։ Հաշուի առնելու է միայն երկու առաջին հեղինակները։

Խորենացին նոյն բառը գործ է ածում Թէոդոս Կայսրի նկատմամբ։ Նախ պէտք է նկատել, որ Խորենացու ձեռագրերը տալիս են երեք ընթերցուած՝ բարեացապաշտ, չարեաց անպարտ, բարեպաշտ։ Այս ընթերցուածները հաշտեցնել կարելի է միայն, ենթադրելով որ սկզբնական ընթերցուածն եղել է բարեացապաշտ։ Թէոդոսի սովորական մակդիրն է բարեպաշտ։ Սակայն, ընդունենք որ ստոյգ ընթերցուածն է բարեացապարտ։

Ի՞նչ անպատեհութիւն: Թէօդոս, որպէս քրիստոնեայ թագաւոր պարտաւոր է բարիք գործել: Բարեացապարտ նա է, որ պարտական է բարիք անել, լինի ի տրիտուր առացած բարիքի, լինի ի հետեւանս իր կոչումի, լինի առիպուած որեւէ հանգամանքից: Յովհան Կաթողիկոս նոյն միտքը արտայայտելու համար, հարկ է տեսել աւելացնել «ի բարիս բարեացապարտ», խօսելով բիւզանդական Կոստանդին Կայսրի մասին (էջ 148):

Ղեւոնդ Երէցը պատմում է, որ Օմար ստանալով Լեւոն կայսեր յաջող պատասխանը ամաչեց եւ «առաւել եւ յաւելոյր զբարեխառնութիւն եւ զբարեմտութիւն առ ազգ քրիստոնէից եւ ամենայն ուստեք բարեացապարտ զինքն ցուցանէր»: Ասել է թէ, Օմար աշխատում էր ամէն կերպ ցոյց տալ, որ ինքը պարտաւոր է բարիք գործել: Այստեղից առնում է եւ Թովմա Արծրունին:

Կարծում ենք, որ մեր տուած մեկնութիւնը իր տեղին է բոլոր դէպքերում եւ կարիք չկայ հակատրամաբանական ենթադրութիւնների:

Ի պէտս զարգացելոց քերականութեան մէջ պ. Ֆնտգլեան կարդացել է, որ «որ», յարաբերական դերանունը «երբեմն բազմաբար վարի»: Այստեղից հետեւցրել է, որ կ՚ուզէ որ գործ կ՚ածէ, կ՚ուզէ որք:

Ոչ, պ. Ֆնտգլեան: Լեզուի մէջ տարականոն երեւոյթներն եւս իրենց հիմքն ունին եւ բանասիրութեան գործն է մեկնել երեւոյթները եւ ոչ թէ զարտուղին ընդհանրացնել քմհաճ ծաւալումով: Բարի է, որ Բագրատունին գրի է առել որի բազմաբար կիրառութիւնը: Գուցէ աւելորդ չէ, որ պ. Ֆնտգլեան սերտել է նրա գրածը: Բայց որպէս զի պ. Ֆնտգլեան իրաւունք ունենայ դատախօսութիւն կարդալ այս մասին, պէտք է որ մի բան աւելի գիտենայ քան ինչ որ գրուած է երեք քառորդ դար յառաջ: Այսպէս Ֆնտգլեանի սերտած քերականները բերում են որպէս օրինակ որի յոգնաբար գործածութեան Ս. Գրքի այս տունը «յամենայն ծառոց որ է ի դրախտիդ»: Ակներեւ անհեթեթութիւն, որ ուղղելու է «յամենայն ծառոյ որ է ի դրախտիդ»: Արդարեւ, բաւական է համեմատել յոյն բնագրի՝ ἀπὸ παντὸς ξύλου τοῦ ἐν τῷ παραδείσῳ, որպէս զի համոզուենք, որ սրբագրութիւնը ուղիղ է:

Սակայն հեռուները չգնանք, մնանք Կորիւնի գրքոյկի սահմաններում, ուր տեսնում ենք որի բազմաբար գործածութեան դէպքեր: Մօտիկ քննութիւնը ցոյց է տալիս, որ այս դէպքերի մի մասը կարօտ է սրբագրութեան: Օրինակ, Կորիւն ունի՝ «ուրինակ առէք չարչարանաց եւ (յ)երկայնամտութեան զմարգարէսն, որ խօսեցան յանուն տեառն»: Սխալ գրչութիւն է: Յակ. Թղթ. Կթղ. Դ. կարդացւում է՝ «ուրինակ առէք, եղբարք, չարչարանաց եւ երկայնմտութեան զմարգարէսն, որք խօսեցան յանուն տեառն»:

Ուրիշ դէպք: Կորիւն ասում է՝ «մի՛ անփոյթ առներ շնորհացդ որ ի քեզ են.. եւ զանձն ապրեցուցանես եւ զայնոսիկ որ քեզն լսիցեն»: Այստեղ երկու բնորոշ գործածութիւն կայ. յոյնն ունի՝ μὴ ἀμέλει τοῦ ἐν σοὶ χαρίσματος, ὃ ἐδόθη σοι. «շնորհք» նշանակող յոյն բառը եզակի թիւ ունի, ուստի եւ յարաբերականն է եզակի: Մինչդեռ հայը նիւթական թարգմանութեամբ χάρισμα ի դէմ դրած է շնորհք, եւ յոյն ὃ թարգմանել է ճշդիւ որ. մոռանալով, որ «շնորհք» յոգնակի է:

Միեւնոյն օրինակում տեսնում ենք՝ «զայնոսիկ որ քեզն լսիցեն», Ս. Գրքի թարգմանիչներն անգամ սխալում են յոյն անցեալ եւ ներկայ դերբայները արտայայտել յարաբերական նախադասութեամբ հայ լեզուի ոգու համաձայն: Այս դէպքերում գրեթէ ընդունուած կանոն է որ գործածել եզակի եւ թէ յոգնակի մտքով: Այսպէս յոյն τοὺς ἀκούοντας = «լսողս», հայը թարգմանում է «որ լսիցեն» (հայի օրինակում եղել է, անշուշտ, τοὺς ἀκούσαντας). Ուրիշ խօսքով հայ դարձուածները՝ որ լսեն, որ լսիցեն, որ լուեալ են համապատասխանում են յոյն դերբայներին: Աւետարանն ունի՝ երանի որ քաղցեալ եւ ծարաւի իցեն = οἱ πεινῶντες καὶ διψῶντες եւ այլն: Նոյն ոգով գերադասել է ասել «որ իմաստունք են» փոխան յոյն «իմաստունք»: Հաշուի է առնելու նաեւ pluralia tantum բառերի եզաբար համաձայնութիւնը, որ յայտնի է ուրիշ լեզուներում:

Այսպիսով որի բազմաբար վարումը կամայականութեան խաղ չէ եւ ոչ քերականական բթութեան ծնունդ: Եթէ թողնենք սխալ գրչութիւնները, մեծ մասամբ աշխարհիկ լեզուի ազդեցութեան տակ, միւս դէպքերը իրենց բնաւոր հիմն ու բացատրութիւնն ունին:

Արդ պ. Ֆնտգլեան պնդում է, որ Վահանի հատուածում՝ «Վահանայ . . . կենաց ամենեցուն լինէր, որ աշխարհածնին . . . վայելէր», գծածս իրար կապակից են: Ձենք կարծում, որովհետեւ կարելի է ասել «ամենեցուն, որ», բայց անհեթեթութիւն էր «ամենեցուն լինէր, որ . . . վայելէր», սպասելու էր՝ վայելէին: Պ. Ֆնտգլեան նկատում է ներողամտաբար, որ մենք որի բազմաբար վարումին անգէտ որպէս թէ բնագրի՝ «դհամաուան որ ոչ միայն մեզ յայտնի է» սրբագրել ենք որք, եւ չի ուզում ծանրանալ այս ձախող ձեռնարկի վերայ:

Ափսոս, որ արգոյ բանասէրը չի ծանրացել, այլապէս պիտի տեսնէր, որ բնագրի որքը ուղղում ենք որի եւ ոչ թէ, ինչպէս պ. Ֆնտգլեանն է կարծում, որը՝ որքի:

Յանկարծահաս բառի առթիւ պ. Ֆնտգլեան մի բան է միայն ապացուցանում յաջողութեամբ, որ հասանել նշանակում է հասնել, եւ յանկարծահաս նշանակում է յանկարծահաս: Բայց բառիս դիրքը նախադասութեան մէջ մնում է մութ մինչեւ այս է վէճի նիւթը: Չի կարելի ասել «Վահանայ . . . յանկարծահաս լինէր», չի կարելի ասել «ամենեցուն, որ վայելէր»: Սրանով տապալւում է եւ պարոնի մեկնութիւնը հատուածի, որպէս հակաքերականական անձգութիւն:

Մեր տուած բացատրութիւնը եւս անընդունելի է համարում, գուցէ եւ իրաւամբ: Մեր կողմից մի փորձ էր հիմնաւորել քերականօրէն նախադասութեան հինաւուրց իմաստը, ենթադրելով որ բնագիրը անաղարտ է: Փոքր-Կորիւնից սկսած մինչեւ նորագոյն բանասէրները մահուան իմաստով են ըմբռնել քննելի հատուածը: Վահանը «հայրենեաց որդի» է, այն հայրենեաց, որ մեռած են, եւ միեւնոյն ժամանակ Վահան նրանց «կենակից»: Ակներեւ է, որ կենակցութիւն չի կարող այս աշխարհում լինել մեռած մարդկանց հետ:

Թերեւս, մեր միտքը աւելի ճշգրտած կը լինէինք, եթէ աւելցնէինք, որ յանկարծահասի ենթադրեալ գոյականի իմաստը բխում է նրանից, որ զեղչած է «կատարումն» կամ «կէտ» բառը, որպէս մի տեսակ ellipsis, փոխանակ լինելու «յանկարծահաս (կէտ) կենաց» ձեւի: Օրհաս բառի մէջ եւս օր հասկացւում է որպէս օր մահուան: Բնաւ յաւակնութիւն չունենք պնդելու մեր մեկնութեան վերայ, այն պարզ պատճառով, որ ուր թարգմանութիւնը ստիպուած է անցք տալ մեկնաբանութեան, հետեւանքը միշտ կը լինի թէական: Ստոյգն այն է, որ նախադասութիւնը իր ներկայ վիճակում քերականօրէն անյարիր է: Հաւանական է որ աղաւաղուած է: Ագաթանգեղ եւ Փոքր-Կորիւն ունին «սպնջական ցանկալի» բառերը, որ պակասում են Կորիւնի հատուածում: Կասկածելի է, մանաւանդ, երբ ի նկատի առնենք, որ Կորիւնի վերջաբանութիւնը բարւոք վիճակի մէջ չէ:

Դարձեալ նոյն երկու հեղինակները ունեն՝ բարեացապարտն Վահան, բարեացապարտն Տրդատ, փոխանակ Կորիւնի սեռական հոլովի, որ ուշադրութեան արժանի է: Վիճելի հատուածը հաւանօրէն կարօտ է սրբագրութեան:

* * *

Ասած էինք, որ Կորիւնի վերջաբանը կասկածի տեղիք է տալիս: Մաշթոցի աշակերտը, որ գրում է իր ուսուցչի կեանքը, կարիք չպիտի ունենար հաւատացնելու, որ ինքը գրում է «ոչ ի հին համբաւուց», այլ որպէս «ականատես»: Հակառակ իր յայտարարութեան նոյն հեղինակը ստորեւ խոստովանում է որ քաղել է «ի նշանաւոր գիտակաց» տակաւ: Մի հանգամանք, որ մթութիւն է ձգում Կորիւնի երկի շուրջը:

Պ. Ֆնտգլեան գտնում է, որ պէտք է հաւատալ, քանի որ Կորիւն «բարդ ի բարդ կը թուէ հաւատարիմ վկայի իր հանգամանքը»: Իսկ գիտակներից բանաքաղութիւնը: Սրա պատասխանն էլ ունի պ. Ֆնտգլեան: Գիտակ ասածդ, որպէս թէ գիտուն չէ նշանակում, ինչպէս յայտնի է ամէն մի տղայի, այլ գիտցուած. եւ օրինակ է բերում երեւակ բառը, որ իբրեւ նման բնոյթ ունի եւ նշանակում է երեւոյթ:

Ոչ, պ. Ֆնտգլեան, գիտակ նշանակում է գիտցող, եւ երեւակ՝ երեւցող: Ուրիշ ոչինչ: Խնայելու է լեզուն եւ միտքը բռնազբօսիկ եւ ապարդիւն ճիգերից:

Կորիւն ասում է որ չուզեց «զամենայն արարեալս կտակաւ զիւրաքանչիւրսն [նշանակել]» (յաւելումը մերն է): Պ. Ֆնտգլեան շտապում է կտակաւ ուղղել գտակաւ եւ զարմանում է, որ մենք չգիտենք այս գիւտը: Այլեւ, նայելով ՀԲ.ի աւետում է որ բառի ամբողջական ձեւն է «ճշգիւ գտակաւ»:

*Այստեղ եւս պ. Ֆնտգլեանի անխոհեմութիւնը գալիս է բախելու մեր զգուշութեան: Արդեօք բաւարար հիմ կա՞յ առաջարկուած ուղղագրութեան: Կորիւնի ձեռագիրները կարդում են* կտակս: *Ագաթանգեղի մօտ համապատասխան հատուածում երկու հին ձեռագիրներից մէկը եւ հնագոյնը՝ գրուած 1261 թուին ունի* կտակս, *միւսը՝ գրուած 1293 թուին՝* գտակս: *Թւում է թէ ուղղագրութիւնը գոնէ վաղաժամ է: Այլեւ պ. Ֆնտգլեան ինքը պիտի ձեռնպահ մնար իր ուղղագրութիւնից, իմաստի տեսակէտից:* Ճշգիւ գտակս *նշանակում է ճշգիւ, խուզիւ* գտակ *ծակելով պտտելու բանից: Ակնատես գրողը պէտք ունի՞ այս եղանակով վարուելու: Հարկաւ, չէ: Կամ գրողը ակնատես չէ, կամ* գտակս *բառը իր տեղը չէ:*

*Կորիւն ասում է «ի նշանաւոր վկայական քաղելով զհամառօտ կարգեցաք, որ(ք) (մենք ենք գիտչում) ոչ միայն մեզ, այլեւ որ* զմատեանսն ընթեռնուն, յայտնի է»: *Ագաթանգեղի մօտ վերջին նախադասութիւնն է՝ «որք ոչ միայն մեզ, ով թագաւոր, այլ յորժամ քո առաջի զմատեանդ ընթեռնուցուն, յայտնի է»: Պ. Ֆնտգլեան կամենում է Կորիւնը ուղղագրել ըստ Ագաթանգեղի: Մենք ձեռնպահ ենք մնացել եւ մնում ենք եւ այժմ այսօրինակ ուղղումներից, ոչ անգիտութեամբ, այլ այն պարզ պատճառով, որ ուր ընագիրը տարբեր իմաստ է տալիս, չի կարելի է մէկը միւսով ուղղել: Կորիւն ասում է իր գրածը յայտնի է ոչ միայն իրեն այլ եւ որոնք մատեանները են կարդում, այսինքն գրագէտներին: Ագաթանգեղոսի միտքը ուրիշ է, որ իր գրածը յայտնի է ոչ միայն իրեն, այլ եւ յայտնի կը լինի թագաւորին, երբ նրա գրածը կարդան նրա առաջ: Կորիւն եւ Ագաթանգեղ մի ուրիշ խրատական օրինակ են տալիս նոյն ուղղութեամբ: Կորիւն ունի՝ «եւ զի բառ ուրինակի գրելոցս առ ի մէնջ հարքն ի կատարումն դարձան»: Ագաթանգեղ նոյն բառերից հիւսում է միտք. «քանզի բառ ուրինակի գրելոցս առ ի մէնջ ի կատարումն դարձուցաք»: Արդեօք թոյլատրելի՞ է մէկը միւսով ուղղել: Ոչ երբեք. որովհետեւ տարբեր իմաստ են արտայայտում, եւ չի կարելի ասել, տարբերութիւնը պատահմա՞ն հետեւանք է թէ ոչ ընագիր է:*

*Կորիւնի վերջարանի մէջ մի կարեւոր կէտ անհասկանալի է մնացել պ. Ֆնտգլեանին, մի կէտ, որ միանգամայն նոր լոյս է սփռում ամբողջ Յառաջաբանի կերտուածի վերայ: Բերենք նախ այդ մասը ուղիղ ընթերցումով:*

*«Քանզի չէաք իսկ հանդուրժողք զամենայն արարեալսն կտակս զիւրաքանչիւրսն [նշանակել]*[1]*, այլ ի վերագոյն եւ ի հեշտագոյն(ս) յառաքելական անդր զանձինս պատսպարեցաք, որոյ անցեալ զբազմախուռն արգասիւք ուրոցն առ ի մանրակրկիտ առնելոյ զկարեւորագոյնսն պատմեաց (փոխ. տպագրի պատմելոյ). [ուստի եւ մեր առեալ] հանգոյնս (եւ ո՛չ զհամանգամս որպէս տպ. ունի) առացաք, ոչ ի պատիւ ուրոցն Աստուծոյ որք ամենապարծ եւ կենդանատուր խաչին ծանուցեալք յարգեցան, այլ յաւրինակ քաջալերիչ հոգեւոր ծննդոց իւրեանց, եւ որք նորաւք աշակերտելոց իցեն յազգս ազգաց»:*

*Տեսէք ինչպէս է հասկանում Կորիւնի այս տողերը պ. Ֆնտգլեանը. «քանզի անբաւական էր ամէն բրածները ճշգիւ գտակս ամէն մէկը նշանակել, վերագոյնին անոր առաքելական գործունէութեան պատմութեամբ գրաւեցաւ, գաղափար մը տալու կարեւորագոյնին վրայ»:*

*Կորիւն շատ խելօք մարդ չէ դուրս գալիս պ. Ֆնտգլեանի բացատրութեամբ: Նա, որ ձեռնարկել է գրելու գրի պատմութիւնը, այժմ խոստովանում է, որ «վերագոյնին անոր առաքելական գործունէութեան պատմութեամբ գրաւեցաւ» եւ այն էլ «կարեւորագոյնին վրայ գաղափար տալու համար»: Աւելի անմիտ բան չէր կարելի վերագրել մի մատենագրի:*

*Ոչ, պ. Ֆնտգլեան, «առաքելական» չի նշանակում առաքելական գործունէութիւն: Կորիւն ինքը զինքը արդարացնելու նպատակով, որ շատ բան չէ պատմել իր ուսուցչի եւ տառերի գիւտի առթիւ, կոչ է անում առաքելական օրինակին, որ է Ղուկաս աւետարանիչը:*

*Ինչպէս որ Ղուկասը զանց է անում պատմելու մանրակրկտօրէն առաքեալների բազմախուռն գործունէութիւնը, եւ արձանագրում է միայն կարեւորագոյնը, այնպէս վարւում է եւ հայ հեղինակը: Առաքեալին հետեւելով, թողնում է շատը եւ բաւականանում է քչով եւ կարեւորով:*

*Ղուկասի յիշատակութիւնը խորհրդաւոր է:*

---

[1] [ ] մեր յաւելումներն են, ( ) յապաւումները:

*Նրան հետեւել է հայ մատենագիրը ոչ միայն այս կէտում: Աւետարանչի նախաբանը օրինակ է ծառայել եւ մեզ զբաղեցնող վերջաբանին: Ղուկասը գրում է. «քանզի* բազումք *յօժարեցին* վերստին կարգել զպատմութիւն *վասն իրաց հաստատելոց ի մեզ, որպէս աւանդեցին մեզ որ ի սկզբանէ* ականատեսք *եւ* սպասաւորք *եղեն բանին: Կամ եղեւ [եւ] ինձ որ ի սկզբանէ* զհետ երթեալ էի *ամենայնի ճշմարտութեամբ* կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ, զի ծանիցես *զբանիցն, որոց աշակերտեցար, զճշմարտութիւն»:*

*Դժուար չէ նկատել, որ կանգնած ենք այն ծառի մօտ, որտեղից քաղուած են վերջաբանի պտուղները: Գրական կերտուածը եւ բառացի մթերքը մատնում են նախաբանի խնամութիւնը Կորիւնի վերջաբանի հետ: Նախաբանի լոյսի տակ այլ կերպ է ներկայանում ցայժմ ընդունուած կարծիքը, որ վերջաբանը Կորիւնից է անցել Ագաթանգեղին: Առաջնութիւնը գոնէ այս կէտում թւում է թէ զիջանելու է Ագաթանգեղին: Սա աւելի մօտ է իր կառուցումով Ղուկասի նախաբանին: Ագաթանգեղի՝ «ով Թագաւոր» կոչականը համապատասխանում է Ղուկասի՝ «ով Թէոփիլէ» դիմումին: Նրա խօսքը՝ «յորժամ քո առաջի զմատեանդ ընթեռնուցուն, յայտնի է (sc. լիցի)», համաձայնում է նախաբանի՝ «զի ծանիցես զբանիցն, որոց աշակերտեցար, զճշմարտութիւն»:*

*Կորիւն չունի «ով Թագաւոր» կամ փոխարինող կոչական, ընդդէմ Ղուկասի՝ «ով Թէոփիլէ»ի: Հետեւապէս Կորիւն չէր կարող կաղապար ծառայել Ագաթանգեղի: Կորիւն գեղչելով կոչականը, ստիպուած փոխում է նախադասութեան կազմը ի վնաս իմաստին: Ղուկաս գրում է, որ գիտենայ Թէոփիլը, Ագաթանգեղը կրկնում է նոյնը, որ իր գրածը, «երբ կարդան Թագաւորի առաջ, յայտնի լինի նրան», իսկ Կորիւն ի՞նչ է ասում. որ իր գրածը յայտնի է ով որ մատեանները կարդում եւ կամ եթէ ուզենք բառ Ագաթանգեղի, ով որ իր մատեանն է կարդում: Առաջին երկու հեղինակների ասածը հասկանալի է, որպէս դիմում որոշ անձանց, իսկ Կորիւնի բերանում նոյն խօսքը կորցնում է իր* raison d'être*ը, քանի որ առիթաւոր անձը չկայ մէջ տեղը:*

*Ղուկասը յիշում է, որ իրենից առաջ շատերն են գրել ականատեսների աւանդութեան հիման վերայ, ինչ որ ինքն եւս ուզում է գրել որպէս այն, որ «զհետ երթեալ է ամենայնի», ասել է թէ եւս ականատես է: Վերջաբանի հեղինակին ծանօթ են գիտակներ, որոնցից քաղում է, թէ եւ ինքն ականատես է: Արդ Ագաթանգեղ խմբագրական գործ է, եւ այս խօսքերը նրա նկատմամբ ճշմարտութիւն է: Իսկ Կորիւնի համար ո՞վ են այս գիտակները, արդեօք Ս. Գրքի հեղինակները, որոնցից յառաջբերումներ ունի եւ որոնց թւում է թէ առանձին կարեւորութիւն է տալիս, որպէս իր գիտնականութեան վկաներ. իսկ եթէ չէ, հարկադրուած ենք ընդունելու, որ վերջաբանը պատկանում է Ագաթանգեղին եւ յարմարեցրած յետոյ կամ միաժամանակ Մաշթոցի կեանքին: Պէտք է խոստովանել, որ շատերը այն հատուածներից, որ անցած են համարւում Կորիւնից Ագաթանգեղոսի «դարձ փրկութեան» մասը, աւելի իր տեղն են Ագաթանգեղի մօտ, քան Կորիւնի:*

*Ամէն պարագայում երկու երկերը, եթէ անգամ եկած են միեւնոյն գրչից, տակաւին կնճռոտ են իրենց փոխադարձ յարաբերութեան մէջ: Վաղաժամ է պնդել Մաշթոցի վարքի առաջնութեան վերայ ամէն կէտում:*

*Գուցէ աւելորդ չէ նկատել, որ Ղուկասի* «կարգաւ *գրել» կարող է թելադրել, որ վերջաբանի երկու ընթերցուածները* կտակաւ *թէ* գտակաւ, *թերեւս, ծագում են սկզբնական* կարգաւ*ից: Ուրիշ անգամ չեն պատահում այս բառերը Ագաթանգեղ–Կորիւնի մօտ, որ սիրում են կրկնութիւններ, մինչդեռ* կարգաւ *պատահում է (օր. զայս ամենայն* կարգաւ *պատմեցից, էջ* 130, *հատ. էջմիածնի):*

*Վերջաբանի ակնարկը Ղուկասին կրկնւում է Ագաթանգեղի մօտ, Վարդապետութեան ՇԹ. գլխի մէջ: Այստեղ եւս հեղինակը ծրագրում է իր անելիքը Ղուկասին հետեւելով: Սա պատմում է Քրիստոսի կեանքը յարութիւնից յետոյ շատ համառօտակի, ուստի նորէն դառնում է նոյն խնդրին Գործքի մէջ:* «Ակն արկեալ մեզ այսուհետեւ ի վախճան ասացելոցս, *ճառս ի մէջ առնուլ... մանաւանդ զի առընթեր եւս ունիցիմք զգերահառոյց քաջալերիչն զբանելի Ղուկաս, որ իրապէս եւ միջամուխ քրիստոսագործ իրացն կատարելոց ճանաչի...: Եւ քանզի* համառօտ բանիւք *առ ի կատարած աւետարանին իւրոյ զերկնաչու ճանապարհն*

Քրիստոսի նշանակեաց, առնու դարձեալ յառաջելանշան յերկրորդ մատենին զորպիսութիւն իրաց կարգել...»: Մէջ է բերում Ղուկասի նախաբանը, որով հաստատում է մեր համեմատութիւնը վերջաբանի հետ:

Սկզբի ընդգծած նախադասութիւնը նոյն միտքն է արտայայտում, ինչ որ վերջաբանի «եւ քանզի ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ ի կատարումն դարձուցաք»: Կորիւնի մօտ սոյն նախադասութիւնը կարդացւում է՝ «եւ զի ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ հարքն ի կատարումն դարձան»: Հնարաւո՞ր է արդեօք սրբագրել Կորիւնը Ագաթանգեղի կրկնակի արտայայտած իմաստի հիման վերայ: Որքան եւ հաւանական, բայց եւ այնպէս ձեռնպահ մնալու է, քանի որ ձեռագրական կռուան չկայ:

* * *

Գալով Կորիւնի գրութեան ժամանակին, մնում ենք նոյն կարծիքին: Պ. Ֆընտգլեանի ուղղութիւնները չեն որ սխալի փաստեն մեր կասկածները: Նրանք ոչինչ նորութիւն չեն պարունակում: Ինչ որ նոր է, շատ հին է, օր. որ Ագաթանգեղ գրուած է 452—456 թուերին: Հայ բանասիրութիւնը երջանիկ կը լինէր, եթէ կարողանար այսպիսի ճշգրտութեամբ որոշել որեւէ մատենագրի, անգամ Ս. Գրքի թարգմանութեան տարեթիւը: Հայ գրի անդրանիկ երկերի յաջորդական կարգը որոշելու փորձերն իսկ բախում են դժուարութեանց:

Կորիւնի մերձաւորութիւնը Ագաթանգեղի, Եւթաղի եւ Մակաբայեցւոց գրքին, յայտնի է: Սակայն սրանց փոխադարձ յարաբերութիւնը մնում է խորհրդաւոր: Աւելի քան կասկածելի է, որ միեւնոյն գրչից ելած լինին:

Ուրիշ անգամ այն միտքն ենք յայտնել, որ Լուսաւորչի կեանքը գրի առնելու նախաձեռնութիւնը պատկանում է, թերեւս, իրեն Մաշթոցին: Կորիւն շարունակել է իր ուսուցչի գործը, լրացրել եւ իր անձնական կնիքը դրել նրա վերայ: Ագաթանգեղ խմբագրական ձեռնարկ է եւ խմբագրողի ձեռքի հետքերը նշմարելի են: Դժուար չէ նաեւ զատել հինը նոր յաւելումներից:

Ինչ վերաբերում է Եւթաղին եւ Մակաբայեցւոց գրքին, բաւարար հիմք չկայ սրանց թարգմանութիւնը Կորիւնին վերագրելու: Թւում է թէ լեզուական եւ ոճային խնամութիւնը բացատրելու է նրանով, որ Կորիւնն է կրում նրանց ազդեցութիւնը: Առնենք նախ Եւթաղի նախադրութիւնները: Կան նմանութիւններ, որ վկայում են աւելի այն մասին, որ Կորիւն բանաքաղ է, քան թարգմանիչ:

Կորիւն. «Թէպէտ եւ էր կրտսերագոյն եւ առաւել քան զկար մեր գրաւեալ անաչառ հրամանին հաւելոյ» ...

Համեմատել Գործք Առաք., Յառաջ. (էջ 723, Հր. Զօհրապ), «զի անտի զմեզ հայրենի հրամանն յանդգնել աւելի քան զկար մեր գրաւեաց»...

Կորիւն, «զի կամարարգոյնս նուիրեմք զհամատարած ալեաւքն վարդապետական ծովուն» ...

Համեմ. Կթղ. Յառաջ. (էջ 750). «զոր աւրինակ եթէ փոքր նաւակաւ ոք կարծիցէ զհամատարած զծովն հատնել անցանել» ...

Կորիւն. «տրամական հոգւովք պաշարեալ եւ թակարդապատեալ կայ» ...

Համեմ. Գործ. Առաք. Յառաջ (էջ 723). «զանուանակիր աստուածեղէն պատգամացն զմիջամուխ իմաստութեան... որ շուրջ զքեւ թակարդապատեալ» ...

Կորիւն. «ոչ ի մէնջ արհեստախառնեալ մերոյն կարծեաւք վճարանելով» ...

Համեմ. Պաւղ. Թղթ. (էջ 765) զգիրացոյցն զգլուխս իսկ արուեստախառնեալ»..

Կորիւն. «ամի ամի զումարելովք ի նոյն ամսեանն զնոյն յիշատակն տաւնախմբեն».

Համեմ. Պաւղ. Թղ. (էջ 764), «ամի ամի զաւր յիշատակի նորա տաւնախմբեն».

Նմանութիւնն այնքան ակնյայտնի է, որ երկու ենթադրութիւն կարող է լինել, կամ Կորիւն է փոխառու, կամ ինքն է թարգմանել Եւթաղի գործքը եւ այնուհետեւ նոյն դարձուածները կիրարկել Մաշթոցի կեանքին մէջ: Կորիւնի ոճը, որքան որ կարելի է դատել ըստ Մաշթոցի կեանքի, իրաւունք չէ տալիս երկրորդ ենթադրութեան: Կորիւն չէ Եւթաղի թարգմանը: Նմանութիւնը արդիւնք է բանաքաղութեան: Կորիւն ծանօթ է երեւում ոչ միայն Եւթաղի, այլ եւ ընդհանրապէս Ս. Գրքի նախադրութեան: Մի շարք բնորոշ բառեր մատնում են նրա ծանօթութիւնը—անուանակիր, միջամուխ, աստուածամերձ, արդիւնական, թեքել (ի հրէից անտի, էջ 809), հրապարակախաւս:

*Նոյնը կարելի է ասել եւ Մակաբայեցւոց գրքի մասին, որ դժուար թէ Կորիւնի գործ լինի: Ոչ Եւթաղ եւ ոչ Մակաբ. գիրքը հատկանիշ չեն Ս. Գրքի միւս մասերի թարգմանութեան: Նրանք պատկանում են Ե. դարի երկրորդ կէսին:*

*Կոնիբերը կարծիք էր յայտնել, որ Եւթաղ թարգմանուած է 448ին, նրա հիմք չարժական տոմարի հաշիւներն են: Հ. Վարդանեան, որ ներկայումս զբաղուած է Եւթաղի քննական հրատարակութեամբ, թւում է թէ համամիտ է հանգուցեալ հայագէտին: Պաւղոս առաքեալի մահուան ամսաթիւը ինչ ինչ անհարթութիւններ է ներկայացնում եւ ասորամակեդոնական ամսերի համապատասխանը թիւը տակաւին պէտք ունի քննութեան: Հայ ամսաթիւը մերձաւոր կապ ունի ասորամակեդոնականի. ուստի եւ ստոյգ ընթերցումը դեռ խնդրական է, եւ տոմարական հաշիւները վաղաժամ եւ կարօտ վերաքննութեան:*

*Նոյն չարժական տոմարը, սակայն, աւելի հաստատ կռուան է տալիս որոշելու Մակաբայեցւոց գրքի թարգմանութեան ժամանակը: Մակաբ. Երկրորդ երիցս յիշում է ահեկան ամիսը, «մինչեւ յերեսուն ահեկանի ամսեան» (ԺԲ. 30) եւ «յամսեանն ահեկանի, որ աւր հնգետասան էր» (ԺԱ. 33) յոյն բնագիրն ունի՝* μέχρι τριακάδος ξανθικοῦ *եւ* ξανθικοῦ πέμπτῃ καὶ δεκάτῃ, *այսինքն 30 քսանթիկ ամսի եւ 15 քսանթիկ ամսի: Քսանթիկ ասորամակեդոնական տոմարով տարուայ եօթներորդ ամիսն է: Ասորամակեդոնական տարին սկսւում է հոկտեմբերի մէկից, ուրեմն քսանթիկի 15 գալիս է ապրիլի 15ին եւ քսանթիկի 30 ապրիլի 30ին (աւելի ստոյգ հաշուով ապրիլի 13ին եւ 28ին) ասորամակեդոնական տարին հաշւում է 12 ամիս, ամիսը 30 օր եւ հինգ աւելեաց, տարուայ սկզբից մինչեւ եօթներորդ ամսուայ 15 օրը — անում է 195 օր, հաշուելով հոկտեմբերի մէկից, 195երորդ օրը կը գայ ապրիլի 13ին, եւ սոյն հաշուով 30 քսանթիկի հաւասար է ապրիլի 28ին): Արդ եթէ հայ ահեկանի 15 համապատասխանում է քսանթիկի 15ին եւ ապրիլի 13ին, եւ ահեկանի երեսունը քսանթիկի 30ին եւ ապրիլի 28ին, նաւասարդը, նշանակում է սկսւում էր օգոստոսի 1ին: Իսկ նաւասարդը ընկնում է չարժական տոմարով օգոստոսի մէկին 468ին: Հաշուելով, որ քսանթիկի 15 հաւասար է ապրիլի 15ին (եւ ոչ 13), ուրեմն եւ ահեկանի 15 հաւասար նոյն ապրիլի 15ին, կը ստանանք որ նաւասարդը ընկնում է օգոստոսի 3ին, որ տեղի ունենալ կարող էր 460 թուին: Ասել է թէ Մակաբայեցւոց գիրքը թարգմանուած է 460—468 թուին: Եթէ ընդունինք Կոնիբերի դիտողութիւնը Պաւղոս առաքեալի մահուան օրաթիւի վերաբերեալ, կը գանք նոյն թուին: Եւթաղի յառաջաբանում ասուած է, որ Պաւղոս նահատակուեց «յառաջ քան զերիս կաղանդացն յուլեայ», որ է Յունիսի 29: Հայ բնագիրը տարբեր ընթերցուածներ է տալիս եւ, ինչպէս ասացի, հաւանական են համարում «որ է մարգաց» ընթերցուածը: Եթէ ահեկանի 15 հաւասար է ապրիլի 15ին, յունիսի 29 կը գայ ուղիղ մարգաց 30ին: Ասել է թէ Եւթաղի թարգմանութիւնը եւս տեղի է ունեցել 460—464 քառամեակին:*

*Ինչպէս եւ բացատրելու լինենք Կորիւնի, Եւթաղի, Մակաբայեցւոց գրքի, նաեւ Ագաթանգեղի փոխադարձ յարաբերութիւնը, գաղտնիքը որոնելու է 460 թուից յետոյ: Տրամադիր չենք չափազանցելու տոմարական վկայութեան արժէքը, բայց ուրանալը եւս անկարելի է, մանաւանդ երբ գալիս են հաստատելու բանասիրական—պատմական քննութեան կռուանները:*

ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑ

*Պարիս, 25 Նոյեմբեր 1927:*

---

# ՄԱՏԵՆԱԽՕՍԱԿԱՆ

ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ ՎԱՀԱՆ, *Գիւղաշխարհ: Պատմական, ազգագրական ուսումնասիրութիւն: Պարիս 1927: 8°, էջք Գ + 279: Տպ. "Տարօն":*

*«Գիւղաշխարհ»ի նիւթն է Սեբաստիոյ նահանգի պատմական ու ազգագրական ուսումնասիրութիւնը: Սեբաստիա իր ամբողջ նահանգովը թէեւ միշտ Հայաստանի մաս չէ կազմած, սակայն հինէն ի վեր Հայերու բնակավայր հանդիսացած եւ ԺԱ. դարուն հայկական գետին եղած է՝ յատուկ հայ թագաւորութեամբ:*

*Վ. Համբարձումեանի գիրքը երեք բաժանում ունի. առաջին մասին մէջ (էջ 1–48)*